Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿԿ Կենտկոմի Արդյունաբերական արտադրության և շինարարության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

ՀԿԿ Կենտկոմի Գյուղատնտեսական արտադրության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

ՄԱՐՏ 6 1963

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ ԽՈՍՏԱՑԵԼ ԵՆ ՅՈԹՆԱՄՅԱԿԻ 5-ՐԴ ՏԱՐՈՒՄ ԱՐՏԱԴՐԵԼ՝

**279** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ՀԱՑԱՀԱՏԻԿ
**30** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ԲԱՄԲԱԿ
**13,7** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ԾԽԱԽՈՏ
**108** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ՃԱԿՆԴԵՂ
**151** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ԽԱՂՈՂ
**32,6** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ՊՏՈՒՂ
**121** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ԲԱՆՋԱՐԵՂԵՆ
**87** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ԿԱՐՏՈՖԻԼ
**42,5** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ՄԻՍ
**223** ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱ ԿԱԹ
**3.240** ՏՈՆՆԱ ԲՈՒՐԴ
**63,8** ՄԻԼԻՈՆ ՀԱՏ ՁՈՒ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

## СОДЕРЖАНИЕ






Адрес редакции: Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71. Телефон 2-52-78.







# ԱՅՍ ՏԱՐՎԱ ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐԸ

Իր իրավունքների մեջ է մտնում յոթնամյակի հինգերորդ գարունը, որի հետ մեծ հույսեր է կապում և որից մեծ սպասելիքներ ունի սովետական ժողովուրդը։ Լավ, միանգամայն ընդունելի տրադիցիա է դարձել տարվա առաջին ամիսներին հանրագումարի բերել անցյալ տնտեսական տարվա արդյունքները, նշել այն կոնկրետ բնագծերը, որոնք պետք է նվաճվեն նոր տարում։ Ինչպես միշտ, այս տարի էլ այդ աշխատանքները կատարվեցին գարնանացանի նախօրյակին, բնության զարթոնքի օրերին։

Ռոստ-լաբինսկցիների օրինակով ամբողջ երկրում մրցություն սկսվեց յոթնամյակի հինգերորդ տարին գյուղատնտեսության բուռն վերելքի տարի դարձնելու համար։ Սոցիալիստական պարտավորություններ ընդունեցին նաև մեր ռեսպուբլիկայի բոլոր արտադրական վարչությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները։ Առաջին լավ

օրինակը տվեցին Մարտունու արտադրական վարչության տնտեսությունները, որոնց հետևեցին մյուսները։ Վերջերս տեղի ունեցավ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցություն, մեր մրցակիցների՝ եղբայրական Վրաստանի ու Ադրբեջանի գյուղատնտեսության աշխատողների պատվիրակությունների մասնակցությամբ։ Խորհրդակցությունը քննարկեց անցած գյուղատնտեսական տարվա արդյունքները և ընթացիկ տարվա խնդիրները, ընդունեց 1963 թվականի սոցիալիստական պարտավորությունները։

Խորհրդակցությունը նշեց, որ ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսականները, սովխոզների բանվորներն ու գյուղատնտեսության մասնագետները, ոգեշնչված ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումներով, նշանակալից հաջողությունների հասան։ Յոթնամյակի չորրորդ տարում ռեսպուբլիկայում զգալիորեն ավելացավ հացահատիկի, խաղողի, ճակնդեղի, ծխախոտի, ինչպես նաև անասնապահական մի շարք մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը։ 1962 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, հացահատիկա-



յին կուլտուրաների ցանքատարածությունն աճեց 21,5 հազար հեկտարով, յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը՝ 4,2 ցենտներով։

Մշակության բարելավման շնորհիվ անցած տարի, 1961 թվականի համեմատությամբ, յուրաքանչյուր հեկտարից ավելի ստացվեց խաղող՝ 19,5 ցենտներ, շաքարի ճակնդեղ՝ 65, ծխախոտ՝ 4,6 և բանջարեղեն՝ 18 ցենտներ. խաղողի արտադրությունն աճեց 32,5 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 20,5, բանջարեղենինը՝ 25,9 և ծխախոտինը՝ 44 տոկոսով։ Լայն թափ ստացան ջրաշինարարական աշխատանքները, շահագործման հանձնվեցին Արզնի—Շամիրամի, Թալինի ջրանցքների առաջին հերթը և Աբովյանի ջրանցքը, սկսվեցին Ապարանի ջրամբարի կառուցման աշխատանքները։

Ձեռք բերվածը, որը գյուղի աշխատավորների քրտնաջան աշխատանքի արդյունքն է, իհարկե, ուրախացնում է մեզ։ Բայց սովետական մարդկանց խորթ է հաջողություններով տարվելը, մանավանդ, եթե նկատի ունենանք, որ մեզ մոտ գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերն, ընդհանուր առմամբ, ետ են մնում երկրի հարաճուն պահանջներից, շատ տնտեսություն-

ներում և արտադրական վարչություններում անբավարար են օգտագործվում եղած հարուստ ռեզերվներն ու հնարավորությունները։

Քննադատաբար գնահատելով կատարված աշխատանքը, յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ, իսկ այնուհետև նաև ամեն մի արտադրական վարչություն մշակեց 1963 թվականի իր պարտավորությունները, որոնց հիման վրա էլ գյուղատնտեսության առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցությունն ընդունեց Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության աշխատողների 1963 թվականի սոցիալիստական պարտավորությունները։ Նորից բարձրացվեց սոցիալիստական մրցության դրոշը Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի գյուղատնտեսության աշխատողների միջև, մրցություն, որը կոչված է ոչ միայն ծառայելու գյուղատնտեսության վերելքին, այլև նպաստելու Անդրկովկասյան եղբայրական ժողովուրդների դարերի խորքից եկող բարեկամության ու համագործակցության ամրապնդմանը։

Ի՞նչի համար են պայքարելու մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատավորները յոթնամյակի հինգերորդ տարում։ Այս բանը պետք է լավ իմանա յուրա-



քանչյուր կոլտնտեսական, սովխոզի բանվոր ու մասնագետ և հենց այժմվանից, պարտավորություններն ստանձնելու առաջին օրերից, գործնական քայլերի դիմի այդ մեծ ու պատվավոր գործում իր արժանի ավանդը մուծելու համար։

Ռեսպուբլիկայի դաշտավարները պարտավորվել են ընթացիկ տարում հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը հասցնել 12 ցենտների, արտադրել 279 և պետությանը վաճառել 50 հազար տոննա հացահատիկ։ Այսպիսով, հացահատիկի արտադրության աճը, 1962 թվականի համեմատությամբ, պետք է կազմի մոտ 18 տոկոս։ Առանձին արտադրական վարչություններ և տնտեսություններ պայքարելու են ավելի բարձր ցուցանիշների համար։ Բասարգեչարի արտադրական վարչության Ջախրլու գյուղի կոլտնտեսությունն, օրինակ, խոստացել է ամեն մի հեկտարից ստանալ 26 ցենտներ հացահատիկ, Սպիտակի արտադրական վարչության կոլտնտեսությունները պարտավորվել են նախորդ տարվա համեմատությամբ հացահատիկի արտադրությունն ավելացնել 26 տոկոսով։

Արձագանքելով Ուզբեկական ՍՍՌ Յանգի-

Յուլի արտադրական վարչության բամբակագործների հայրենասիրական նախաձեռնությանը, մեր բամբակագործները պարտավորվել են անցած տարվա 28 հազարի փոխարեն, այս տարի արտադրել և պետությանը վաճառել 30 հազար տոննա բամբակ, յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնելով 26,6 ցենտների։ Խոստումը գործի վերածելու նպատակով բամբակագործները որոշել են ցանքն ավարտել 8—10 օրում, ցանքի 40 տոկոսը կատարել քառակուսի-բնային եղանակով և յուրաքանչյուր հեկտարում ապահովել 90—100 հազար բույս։

Փառաբանված ծխախոտագործներ շատ կան մեր ռեսպուբլիկայում։ Այդ նրանց, բարձր բերքի վարպետների ջանքերի շնորհիվ է, որ տարեցտարի ավելանում է ծխախոտի հումքի արտադրությունն ու վաճառքը պետությանը։ Մեր ծխախոտագործները, որ միշտ էլ քայլել են մրցության ավանգարդում, այս տարի նույնպես բարձր պարտավորություններ են ստանձնել։ Արտադրել և պետությանը վաճառել 13,7 հազար տոննա հումք կամ 1.200 տոննայով ավելի, քան 1962 թվականին— ահա նրանց բնագիծը։ Միայն շամշադինցիները խոստացել են պետությանը հանձնել 2.550 տոննա հումք, ապահովելով յուրաքանչյուր հեկտարից 28,6 ցենտներ բերքի ստացումը։



Հարյուր ութ հազար տոննա շաքարի ճակընդեղ արտադրելու և պետությանը վաճառելու համար են պայքարելու Սպիտակի և Անիի արտադրական վարչությունների ճակընդեղագործները։ Նրանք խոստացել են ամեն մի հեկտարից ստանալ 292 ցենտներ շաքարի հումք։ Ռեսպուբլիկայի բանջարաբույծները խոսք են տվել արտադրել 121 հազար տոննա բանջարեղեն, որից պետությանը վաճառել 88 հազար տոննա կամ 16 հազար տոննայով ավելի, քան 1962 թվականին։ Նրանք պարտավորվել են արտադրել 87 հազար տոննա կարտոֆիլ, յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնելով 105 ցենտների և պետությանը վաճառել 20 հազար տոննա։

Հայտնի է, որ վերջին տարիներին մեզանում լուրջ քայլեր են արվում խաղողագործության ու պտղաբուծության զարգացման ուղղությամբ։ Հիմնվում են նոր այգիներ, դրանց բազայի վրա ստեղծվում այգեգործական նոր սովխոզներ, վճռական միջոցներ են իրականացվում բերքատվության բարձրացման ուղղությամբ։ Հենց միայն ընթացիկ

տարում կհիմնվեն 1.520 հեկտար խաղողի և 2.300 հեկտար պտղատու այգիներ։ Խաղողագործներն ու պտղաբույծները խոստացել են 1963 թվականին արտադրել 151 հազար տոննա խաղող և 32,6 հազար տոննա պտուղ, պետությանը վաճառել 140 հազար տոննա խաղող և 30 հազար տոննա պտուղ։

Թեև ռեսպուբլիկայում քիչ չեն այն կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք ունեն զարգացած անասնաբուծություն, բայց, ընդհանուր առմամբ, անասնապահական մթերքների արտադրությունը ետ է մնում յոթնամյա պլանով սահմանված մակարդակից։ Անցյալ տարի թերակատարվեցին անասնապահական մթերքների արտադրության և վաճառքի պետական առաջադրանքները։ Պատճառը կերի պաշարների անբավարար կուտակումն էր, անասունների խնամքի ու կերակրման վատ կազմակերպումը։ Քննադատաբար գնահատելով իրենց աշխատանքի արդյունքները, անասնապահները խոստացել են 1963 թվականին հաղթահարել ետ մնալը և տնտեսության այդ կարևոր ճյուղը ևս դուրս բերել զարգացման լայն ճանապարհ։ Նրանք պարտավորվել են 1963 թվականին արտադրել 42,5 հազար տոննա միս (կենդանի քաշով), 223 հազար





տոննա կաթ, 3.240 տոննա բուրդ, 63,8 միլիոն ձու և պետությանը վաճառել 35,5 հազար տոննա միս, 150 հազար տոննա կաթ, 54,6 միլիոն ձու։ Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը կհասցվի 1.505 կիլոգրամի, ամեն մի ոչխարի բրդատվությունը՝ 2,34 կիլոգրամի։ 3,4 տոկոսով պետք է աճի խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, ոչխարներինն ու այծերինը՝ 7,6 տոկոսով, թռչուններինը՝ 38 տոկոսով։ Նախատեսված է 100 կովից ստանալ 90 հորթ, 100 մաքիից՝ 95 գառ և մեկ մերունից 12 խոճկոր։

Բոլորի համար պարզ է, որ անասնաբուծության զարգացման և մթերատվության բարձրացման հիմնական պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Այդ նպատակով էլ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են ընթացիկ տարում կուտակել 568 հազար տոննա խոտ, 652,4 հազար տոննա սիլոս, 327 հազար տոննա ծղոտ։ Կերի բազան ամրապնդելու նպատակով կոլտնտեսություններն ու սովխոզները խոստացել են ցանել 35 հազար հեկտար եգիպտացորեն և հատիկաընդեղենային արժեքավոր կուլտուրաներ։

**Սրանք են այն բնագծերը, որ պետք է նվա-**

ճեն մեր գյուղատնտեսության աշխատողներն այս տարի։ Մեր պարտավորությունները բավականաչափ լուրջ են և անելիքները խոշոր։ Խոստումը գործի վերածելու համար մեծ անելիքներ ունեն նաև մեր ագիտատորները, որոնք պետք է մասսայական-բացատրական աշխատանք կատարեն գյուղում։ Ամենից առաջ անհրաժեշտ է յուրաքանչյուր կոլտնտեսականի, սովխոզի ամեն մի աշխատողի ու գյուղատնտեսության մասնագետի հասցնել ոչ միայն իրենց տնտեսության ու վարչության առջև դրված խնդիրները, այլև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների պարտավորությունները։ Գյուղական պարտիական կազմակերպությունները, ագիտատորների բազմահազարանոց բանակը այդ գործը պետք է կազմակերպեն խելացիորեն, ոչ միայն նրանց ասեն, թե ինչ է արվելու ռեսպուբլիկայում առհասարակ, այլ բացատրեն, թե ինչ պետք է անի նրանցից յուրաքանչյուրը։ Հարկավոր է օգնել գյուղի աշխատավորներին, որպեսզի ամեն մեկը կարողանա ճիշտ որոշել իր կոնկրետ անելիքները, գտնել իր տեղը գյուղատնտեսության վերելքի համաժողովրդական գործում։

Ինչպես փոքրիկ առվակներից գոյանում



են մեծ, հորդահոս գետերը, այնպես էլ ամեն մի կոլտնտեսականի ու սովխոզի բանվորի, յուրաքանչյուր տնտեսության աշխատանքի արդյունքներից առաջանում է մթերքների առատություն ու առաջ բերում համաժողովրդական հարստություն։ Այս բանը պետք է յուրաքանչյուր ագիտատոր հասցնի գյուղի աշխատավորների գիտակցությանը, ձգտի այն բանին, որ նրանցից յուրաքանչյուրն իր ավանդը մուծի պարտավորությունների կատարման մեծ գործում։

Անհրաժեշտ է ամենուրեք լավ նախապատրաստվել և կազմակերպված անցկացնել գարնան գյուղատնտեսական աշխատանքները, ձմեռումից հաջող դուրս բերել հանրային հոտը։ Պետք է հաշվի առնել, որ դրանք առաջին, շատ կարևոր էտապն են պարտավորությունների կատարման համար մղվող պայքարում։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը ՍՄԿԿ Կենտկոմին, ՍՍՀՄ Մինիստրների Սովետին և ընկ. Ն. Ս. Խրուշչովին ուղղված նամակում խոստացավ պատվով կատարել ստանձնած պարտավորությունները, 1963 թվականը դարձնել գյուղատնտեսական մթերքների արտադրության վերելքի տարի։

Ռ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ՊԱՐՏՔԻ ԵՎ ԽՂՃԻ ՄԱՍԻՆ

*Լինել ագիտատոր, նշանակում է վայելել պարտիայի մեծ վստահությունը, դաստիարակել մարդկանց։ Այդ տեսակետից շատ ուսանելի է Բալթիական նավաշինական գործարանի ագիտատոր, փականագործ Ն. Սորոկինի «Ագիտատորի պարտքի մասին» խորագրով հոդվածը։ Որպես ագիտատոր ես սիրով ու հաճույքով կարդացի Սորոկինի հոդվածը և լուրջ եզրակացության հանգեցի։ Միանգամայն ճիշտ է նա, երբ ագիտատորների գործունեության մեջ գլխավորը համարում է յուրաքանչյուր մարդու միտքն ու սիրտը ամրապնդել, կոփել դեպի ժողովուրդը, պարտիան ունեցած հավատարմությամբ։ Ուստի ամեն մի ագիտատոր սիստեմատիկաբար պետք է զբաղվի աշխատավորների շրջանում կատարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքով, ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանի պարտիայի և կառավարության*



*որոշումները։ Նա պետք է օգնի հետ մնացողներին, որպեսզի նրանք դառնան առաջավորներ, պաշտպանի ու խրախուսի լավ նախաձեռնությունը, աշխատանքի առաջավոր մեթոդները։*

*Ագիտատոր Սորոկինը իրավացի է, երբ քննադատում է այն մարդկանց, որոնք «ծանրաբեռնում» են համարում ագիտատոր լինելու հանձնարարությունը։ Ինչ խոսք, որ նման մարդիկ սրտացավ վերաբերմունք չեն ունենա հանձնարարված գործի նկատմամբ։ Եվ դա է պատճառը, որ շատ տեղերում ագիտացիոն-մասսայական աշխատանքը կամպանիոն բնույթ է կրում։ Ինչպես ագիտատոր Սորոկինն է ասում՝ «սկըսվեց կամպանիան՝ կաղմկեն, ավարտվեց՝ ամեն ինչ լռեց»։ Տեղերում նման դեպքերի գրեթե միշտ կարելի է ականատես լինել։ Հենց որ սկսվում են սովետների ընտրությունները, ուժեղանում են նաև աշխատավորների շրջանում կատարվող մասսայական բացատրական աշխատանքները։ Ընտրությունները ավարտվելուց հետո շատ ագիտատորներ դադարում են իրենց ունկնդիրների հետ հանդիպումներ ունենալուց։ Այնինչ ագիտատորը պետք է մշտա-*

կան դաստիարակչական աշխատանք կատարի։

Ագիտատոր Սորոկինը հմուտ դաստիարակ է։ Նա իր ունկնդիրներին, հատկապես սկսնակ բանվորներին, դաստիարակում է դեպի աշխատանքը, դեպի աշխատանքի ընկերները, վարպետը ունեցած հարգանքի ոգով։ Շնորհիվ ագիտատոր Սորոկինի նպատակասլաց դաստիարակչական աշխատանքի, նրա գրեթե բոլոր աշակերտները արագ կերպով տիրապետում են տեխնիկային և դառնում իրենց գործի վարպետները։

Ես կարծում եմ Սորոկինը որպես ագիտատոր իր նպատակին հասնում է այն պատճառով, որ նա արտադրության առաջավոր է և իր անձնական օրինակով ոգևորում է մյուսներին։ Ունկնդիրները նրան հարգում են նրա լավ աշխատանքի համար։ Հետևաբար ագիտատորը ամենից առաջ պետք է լավ աշխատող լինի, արտադրության առաջավոր և իր վարքագծով օրինակելի բոլորի համար։ Իսկ ինչ հարգանք կարող է ունենալ ունկնդիրների մոտ այն ագիտատորը, որը չի կատարում աշխօրերի պարտադիր մինիմումը, բայց նրան հանձնարարում են խոսել աշխատանքային կարգապահության մասին։ Հետաքրքիր է



իմանալ ո՞վ կլսի նրան։ Եվ դիպուկ է այն կոլտնտեսականի պատասխանը, որն ասել է՝ նախ քեզ ագիտացիա արա, հետո մեզ...

Պարտկազմակերպությունը պետք է լուրջ մոտեցում ունենա ագիտատորի ընտրության նկատմամբ և ագիտացիոն աշխատանքի հանձնարարություն տա այնպիսի մարդկանց, որոնք աշխատանքի առաջավորներ են և իրենց անձնական օրինակով ոգևորում են մյուսներին։

Ագիտատոր Սորոկինը միանգամայն ճիշտ է, երբ խստորեն քննադատում է որոշ ղեկավարների, որոնք կտրվում են կոլեկտիվից, խուսափում են բանվորների հետ հանդիպումներ ունենալուց։ Այնինչ պարտիան պահանջում է, որպեսզի սովետական և տնտեսական ղեկավարները վերջ տան գաղափարական աշխատանքի նկատմամբ եղած տգետ վերաբերմունքին, այն երկրորդական գործ չհամարեն; ամբողջովին պատասխանատու լինեն կոլեկտիվի գաղափարական-քաղաքական և բարոյական վիճակի համար։

Ուստի լավ կլինի, որ հատուկ ուշադրություն դարձվի նաև ղեկավար աշխատողներին քաղաքական ագիտացիային մասնակից դարձնելու վրա։ Եթե ղեկավար աշխատող-







ները անմիջական մասնակցություն ունենան ագիտացիոն աշխատանքներին, ապա ամենօրյա և ավելի սերտ կապ կստեղծվի աշխատավորների հետ, մեր ագիտացիան կլինի ավելի ազդեցիկ։ Բացի այդ, ղեկավար աշխատողները զրույցի ընթացքում կարող են կոնկրետ և սպառիչ պատասխան տալ ունկնդիրներին հուզող այն բոլոր հարցերին, որոնք վերաբերում են տվյալ ձեռնարկության, հիմնարկի, կոլտնտեսության կամ սովխոզի աշխատանքները բարելավելուն։

Վերջերս ինձ հանձնարարվեց զեկուցում կարդալ Գորիսի № 10 շինարարական օբյեկտում։ Շինարարները իրենց կոլեկտիվում սիրով լսեցին իմ զեկուցումը և ես վերջում շատ հաճույքով պատասխանեցի նրանց հարցերին։ Միաժամանակ ունկնդիրները ցանկացան իրենց ղեկավարներին հարցեր տալ նաև շինարարական աշխատանքները բարելավելու մասին։ Աշխատանքները բարելավելու վերաբերյալ շինարարների գործնական հարցերը մնացին անպատասխան, որովհետև զեկուցումը սկսվելուց մի քանի րոպե առաջ գլխավոր ինժեներ Կ. Հովակիմյանը և մյուս ղեկավարները գերադասել էին տուն գնալ։ Ինչ խոսք,



որ այդ բանը մեծ վրդովմունք առաջացրեց։ Այսպիսի փաստեր շատ կան։ Պարզ է, երբ ղեկավար ընկերները ագիտացիոն աշխատանքի հանձնարարություն չեն ստանում, նրանք կտրվում են կոլեկտիվից։

Որպեսզի ագիտացիան լինի նպատակասլաց ու մոբիլիզացնող, պետք է պարտկազմակերպությունները ագիտատորի կոչման արժանացնեն միայն լավագույն մարդկանց։ Քաղաքական-մասսայական աշխատանքներից պետք է իսպառ վերացվի ֆորմալիզմն ու ձևամոլությունը։ Հարկավոր է հետևողական աշխատանք ու պահանջկոտություն ցուցաբերել ագիտկոլեկտիվների նկատմամբ։ Սիստեմատիկաբար ստուգման ենթարկել ագիտատորների աշխատանքները և իմանալ, թե ինչ հետք է թողել ագիտատորի զրույցը տվյալ արտադրական օբյեկտում։

Ագիտատորի պատվավոր անունը մեծ հարգանք ունի մեր ժողովրդի մեջ։ Իմ հիշողության մեջ միշտ բարձր է հնչում Նադեժդա Կոնստանտինովնայի հոդվածը՝ ագիտատորի խղճի մասին։ Այո, յուրաքանչյուր ագիտատորի համար կարևոր նշանակություն ունի պարտքի զգացումը և խիղճը։

Թ. ՓԱՐՍՅԱՆ

Գորիս քաղաքի ագիտատոր

# ԱՃՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ

## (Թվեր և փաստեր)

*Յոթնամյակի ամեն մի տարին նորանոր հաջողություններ է բերում մեր մեծ երկրին։ Ամեն տարի ՍՍՌՄ-ում կառուցվում են նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, դպրոցներ ու հիվանդանոցներ, հանգստյան տներ ու սանատորիաներ։ Է՛լ ավելի է աճում ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Յոթնամյակի յուրաքանչյուր տարին խոշոր քայլ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Ահա թվեր և փաստեր յոթնամյակի 4-րդ տարվա հաջողությունների մասին։*

*Ազգային եկամուտը, միայն մեկ տարվա ընթացքում (1961 թվականի համեմատությամբ) համադրելի գներով, աճել է 6 տոկոսով, այսինքն՝ մոտավորապես 9 միլիարդ ռուբլով և այժմ կազմում է 161,5 միլիարդ ռուբլի։*

*Աճել է նաև աշխատավորների ռեալ եկամուտը, որը յոթնամյակի 4 տարում կազմել է 18 տոկոս, իսկ 1961 թվականի համեմատությամբ, աճել է 3 տոկոսով, կոլտնտեսականների ռեալ եկամուտը, մեկ աշխատողի հաշվով, ավելացել է 5 տոկոսով։*



*Բնակչությունը ժողովրդական կրթության, բուժ-տար- սպասարկման, սոցիալական ապահովման և բեր վճարների ու արտոնությունների համար 1962 թվականին ստացել է 28,4 միլիարդ ռուբլի, 1961 թվականի 26,4 միլիարդ ռուբլու դիմաց։*

*Բնակչությունը 1962 թվականին գնել է ավելի շատ սննդամթերքներ և արդյունաբերական ապրանքներ, քան նախորդ տարում։ 1961 թվականի համեմատությամբ, 1962 թվականին 6,1 միլիարդ ռուբլով ավելացել է մանրածախ ապրանքաշրջանառությունը։ Գյուղական վայրերում սպառողական կոոպերացիայի մանրածախ ապրանքաշրջանառությունը աճել է 9 տոկոսով։*

*Անցած տարի, 1961 թվականի համեմատությամբ, վաճառվել են միս և մսամթերքներ՝ 104 տոկոսով, ձուկ և ձկնամթերքներ՝ 105 տոկոսով, կաթ և կաթնամթերքներ՝ 101, շաքար՝ 109 տոկոսով շատ և այլն։*

*1961 թվականի համեմատությամբ ավելի է վաճառվել կահույք՝ 115 տոկոսով, սառնարան՝ 118, լվացքի մեքենա՝ 137, փոշեծծիչ՝ 120, ժամացույց՝ 115, հեռուստացույցներ՝ 109, մարդատար ավտոմեքենաներ՝ 107 տոկոսով և այլն։*

*Հանրակրթական, բանվորի և գյուղերիտ դպրոցներում սովորողների թիվը 1962 թվականին հասավ 42 միլիոնի, որը 3 միլիոնով ավել է անցյալ տարվա*

սովորողների քանակից։ Միայն գիշերօթիկ և երկարօրյա դպրոցներում սովորում էին 2 միլիոն երեխաներ։

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում էին 5,6 միլիոն մարդ, որից միայն բարձրագույն ուսումնական հաստատություններում 2,9 միլիոն մարդ։

Ավելացել է նաև գիտաշխատողների թիվը։ 1962 թվականի վերջին գիտական հիմնարկներում ու կազմակերպություններում աշխատում էին ավելի քան 450 հազար մարդ։

Մեծ զարգացում է ապրում բնակարանային շինարարությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1957 թվականի՝ բնակարանային շինարարության մասին ընդունած որոշումից հետո մինչև 1963 թվականի հունվարի 1-ը, քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել է 12 միլիոն բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ ավելի քան 3,8 միլիոն տուն։ Սովետական Միությունում այդ 6 տարում նոր բնակարաններում են ապրում մոտավորապես 75 միլիոն մարդ։

Անցած տարի պետական միջոցների, պետական վարկի օգնությամբ և բնակչության միջոցների հաշվին քաղաքներում և բանվորական ավաններում շահագործման են հանձնվել 81 միլիոն քառակուսի մետր



ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, այսինքն ավելի քան 2 միլիոն նոր բնակարան։

Գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու ինտելիգենցիան պետական և կոլտնտեսային վարկի օգնությամբ կառուցել են 450 հազար բնակելի տուն։

Մեծ գումարներ են ներդրված լուսավորության, կուլտուրայի, գիտության և առողջապահության հիմնարկների շինարարության գործում։ 1961 թվականի համեմատությամբ 24 տոկոսով ավելի շատ հանրակրթական դպրոցներ, 33 տոկոսով ավելի մանկական, նախադպրոցական հիմնարկներ, 31 տոկոսով ավելի հիվանդանոցներ և պոլիկլինիկաներ են շահագործման հանձնվել։ Միայն մեկ տարում (1962 թվական) բժիշկների թիվը ավելացել է 22 հազարով։ Մանկապարտեզներում և մանկամսուրներում երեխաների թիվն աճել է ավելի քան 600 հազարով։

Հիվանդանոցներում մահճակալների քանակը աճել է գրեթե 100 հազարով, սանատորիաներում ու հանգստյան տներում՝ գրեթե 20 հազարով։

Նյութական բարեկեցության բարձրացման լավագույն ապացույցն է խնայողական դրամարկղներում ավանդատուների թվի աճը։ Անցած տարի խնայողական դրամարկղներում բնակչության ավանդները աճեցին 1 միլիարդ ռուբլով և կազմեցին 12,7 միլիարդ ռուբլի։ Ավանդատուների քանակը հասավ 53 միլիոնի։

Հաջողությունները մեծ են նաև մեր ռեսպուբլիկայում։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը 1962 թվականին կազմեց 600,3 միլիոն ռուբլի, որը պլանից ավել է 9,3 միլիոն ռուբլով։ Մանրածախ ապրանքաշրջանառության 1962 թվականի ծավալը, 1961 թվականի համեմատությամբ, ավելացավ 49,3 միլիոն ռուբլով։

1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, ավել է վաճառվել յուղ՝ 102 տոկոս, կաթ և կաթնամթերքներ՝ 108, ձուկ և ձկնամթերքներ՝ 104 տոկոսով և այլն։

Անցած տարի վաճառվել է ավելի շատ արդյունաբերական ապրանքներ, քան 1961 թվականին։ 1961 թվականի համեմատությամբ ավել է վաճառվել տրիկոտաժեղեն՝ 111 տոկոսով, կաշվե կոշիկ՝ 118, կարի մեքենա՝ 101, սառնարան՝ 104, լվացքի մեքենա՝ 108, հեռուստացույց՝ 101, փոշեծծիչ՝ 111, մարդատար ավտոմոբիլ՝ 109 տոկոսով և այլն։

Հաջողությունները մեծ են նաև ժողովրդական կրթության ասպարեզում։ Մեր ռեսպուբլիկայի բնակչության 23 տոկոսը սովորում է։ Հանրակրթական դպրոցներում և մյուս կարգի դպրոցներում սովորողների թիվը հասնում է 411,2 հազար մարդու, որը 41,7 հազարով ավելի է 1961 թվականից։ Գիշերօթիկ և



երկարօրյա դպրոցներում սովորում են 12,8 հազար աշակերտ։

Ավելացել է բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների թիվը, որը հասել է 25,9 հազարի, միայն անցած տարի ժողովրդական տնտեսությունն ստացավ 6.586 մասնագետ, որից 2.945-ը բարձրագույն կրթությամբ։

Կառուցվում է մեր ռեսպուբլիկան, օրեցօր նոր բնակելի և կուլտուր-կենցաղային շենքեր են շահագործման հանձնվում։ Անցած տարի պետական և կոոպերատիվ միջոցների հաշվին քաղաքներում և բանվորական ավաններում շահագործման է հանձնվել 787 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը կազմում է 16,3 հազար բարեկարգ բնակարան։ Գյուղական վայրերում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի միջոցներով կառուցվել է մոտ 6,9 հազար բնակելի տուն։

Անցյալ տարի ռեսպուբլիկայում նոր բնակարաններ են ստացել 23 հազար ընտանիք։

Գերակատարվել է 1962 թվականի բնակարանային շինարարության պլանը։ 1957 թվականի հունվարի 1-ից մինչև 1963 թվականի հունվարի 1-ը ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել են 150 հազար բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ 41,6 հազար տուն։

---

# ԵՐԲ ՄՈՆՈՊՈԼԻՍՏՆԵՐԸ ՄԻԱՎՈՐՎՈՒՄ ԵՆ...

(Արտադրության կապիտալիստական մասնագիտացումը և նրա պտուղները)

*Պատմության ամբողջ ընթացքով ապացուցված են ծաղկող սոցիալիզմի անվիճելի առավելությունները զառամյալ կապիտալիզմի նկատմամբ։ Այդ բանը նորից ընդգծեց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում տված զեկուցման մեջ։* «Համաշխարհային զարգացման մեջ հստակորեն որոշակի են դարձել երկու տենդենցներ,— *ասաց Նիկիտա Սերգեևիչը։*— Առաջին տենդենցը սոցիալիստական երկրների ազգային տնտեսությունների ավելի ու ավելի սերտ մերձեցումն է, նրանց արտադրողական ուժերի միջազգայնացման առաջադիմական պրոցեսը: Երկրորդ տենդենցը կապիտալիստական «ինտեգրացիան» է, որը իրեն նպատակ է դնում միավորել տարբեր երկրների մոնոպոլիստական կապիտալի ջանքերը՝ սոցիալիզմի համաշխարհային աճող սիստեմի դեմ մղվող պայքարում: Բայց մոնոպոլիաների՝ միավորման ձգտումը անխուսափելիորեն ուղեկցվում է միջիմպերիալիստական հակասությունների, բախումների, կոնֆլիկտների խիստ սրմամբ»:

*Մոնոպոլիստական պարագլուխները և նրանց գաղափարական զինակիրները ամեն կերպ փորձում են քողարկել այդ հակասությունները, արդարացնել կապիտալիզմը։ Այսպես, բուրժուական տնտեսագետ Ցերստեբը պնդում էր, որ արևելաեվրոպական երկրների միավորման ձգտմանը հակադրվում է արևմտյան դաշինքը՝ մրցակիցների բազմակողմանի ու կազմակերպված պարտնյորությամբ հանդերձ։*

*Թե այդ ինչ «մրցակիցների կազմակերպված պարտնյորություն» է, ցույց են տալիս կապիտալիստական մասնագիտացման հետևանքները։ Հայտնի է, որ մասնագիտացումը աշխատանքի այնպիսի հասարակական բաժանման ձև է, երբ որոշ արդյունքի և նույնիսկ դրա մի մասի արտադրությունը վեր է ածվում արդյունաբերության մի առանձին ճյուղի։ Մասնագիտացումն առաջացել է կապիտալիզմի ընդերքում, սկզբում առանձին երկրների շրջանակներում։*

Արտադրողական ուժերի զարգացման հետ մեկտեղ բուրժուական պետությունները սկսեցին մասնագիտանալ արտադրանքի այնպիսի տարբեր տեսակների արտադրության ուղղությամբ, որոնք նկատի էին առնվում ո՛չ միայն ներքին շուկայի, այլև ուրիշ երկրների հետ առևտուր անելու համար։ Դրա հետևանքով մասնագիտացումը դուրս եկավ ազգային շրջանակներից և միջազգային բնույթ ընդունեց։

Երկրորդ համաշխարհային պատերազմին նախորդած ժամանակաշրջանում կապիտալիստական մասնագիտացման մեջ գերակշռում էր աշխատանքի բաժանումը, մի կողմից՝ հումքի ու պարենի արտադրության գծով, մյուս կողմից՝ արդյունաբերական արտադրանքի գծով։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում մասնագիտացման այդ ձևը կատարելագործվեց։ Աշխատանքի միջազգային բաժանումն սկսեց գնալով ավելի խորանալ առանձին պատրաստի շինվածքների, դետալների և դրանց հանգույցների արտադրության ուղղությամբ։

Կապիտալիզմի զարգացած երկրներն այժմ արտահանում են ո՛չ միայն սարքավորում և



արդյունաբերական ուրիշ ապրանքներ, այլև ավելի ու ավելի մեծ չափով ներմուծում են մեքենաներ, հաստոցներ, ապարատներ, զանազան գործիքներ և այլն։ Օրինակ, մինչև պատերազմը այդպիսի ապրանքները կազմում էին ԱՄՆ-ի ներմուծման 19 տոկոսը, իսկ այժմ՝ ավելի քան 35։

Կապիտալիզմը, ընդգծում էր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում, իր արտադրությունը զարգացնում է մրցակցային խիստ օրենքներով։ Այդպիսի պայմաններում հաղթում են առավելապես այն ձեռնարկությունները, որոնք արտադրանք են տալիս ավելի ցածր ինքնարժեքով։ Դա իր հերթին հնարավոր է մասսայական կամ խոշոր սերիական արտադրության դեպքում, որը պահանջում է արտաքին վաճառահանման հուսալի շուկաներ։ Կապիտալիստներին դեպի աշխատանքի բաժանում և մասնագիտացում է մղում արժեքի օրենքի անողոք գործողությունը, որի համաձայն ամեն մի արտադրություն պետք է շահութաբեր լինի, այլ կերպ նա կձախողվի։

Հայտնի է, որ մասնագիտացումն ինքնըստինքյան առաջադիմական տենդենց է։ Որչափ ավելի խորն է աշխատանքի բաժանումը և խոշոր է արտադրությունը, այնչափ

ցածր են նրա ծախքերը և էժան՝ արտադրան-
քի ինքնարժեքը։ Բայց մասնագիտացումն
անխզելիորեն կապված է ո՛չ միայն արտա-
դրողական ուժերի, այլև արտադրական հա-
րաբերությունների զարգացման հետ։ Մաս-
նավոր սեփականության առկայության պայ-
մաններում այն կրում է տարերային, խորա-
պես հակասական և այլանդակ բնույթ։

Իմպերիալիզմի դարաշրջանում արտադրու-
թյան մասնագիտացումը դարձավ արդյունա-
բերական տեսակետից զարգացած իմպերիա-
լիստական փոքրաթիվ պետությունների ար-
տոնությունը։ Այդ նույն ժամանակ մի շարք
կապիտալիստական երկրներ առաջվա նման
զրկված են աշխատանքի միջազգային բա-
ժանմանը որևէ չափով օգտավետ պայման-
ներում մասնակցելու հնարավորությունից։
Իմպերիալիզմը աշխարհը պառակտել է, ին-
դուստրիալ տերությունների և այդ տերու-
թյունների ագրարա-հումքային կցորդների։

Մոնոպոլիստները գաղութներին և կախյալ
երկրներին հարկադրում էին մասնագիտա-
նալ միայն գյուղատնտեսական հումքի ար-
տադրության ուղղությամբ։ Այդպիսի այլան-
դակ, միակողմանի մասնագիտացումը, որը
հսկայական շահույթներ էր ապահովում իմ-
պերիալիստների համար, ազատագրված երի-



տասարդ պետություններին ժառանգություն
թողեց արտադրողական ուժերի զարգացման
չափազանց ցածր մակարդակ։ Չնայած նրան,
որ թույլ զարգացած երկրներում այժմ ապ-
րում է կապիտալիստական աշխարհի բնակ-
չության երկու երրորդը, բայց նրան բաժին է
ընկնում մետաղամշակման արդյունաբերու-
թյան արտադրանքի 1/25-ից էլ պակաս մա-
սը։

Երիտասարդ պետություններն արդյունա-
բերական սարքավորման սուր կարիք ունե-
նալով, չեն կարողանում, սակայն, հարկ
եղած սարքավորումը գնել՝ վճարելու համար
միջոցներ չունենալու պատճառով։ Բանն այն
է, որ պատերազմից հետո է՛լ ավելի մեծա-
ցավ հումքի և պատրաստի արդյունաբերա-
կան ապրանքների գների միջև եղած ճեղք-
վածքը։ 1960 թվականին հումքային ապրան-
քի մեկ միավորի դիմաց կարելի էր գնել
20—25 տոկոսով ավելի պակաս արդյունա-
բերական ապրանքներ, քան 1950 թվակա-
նին։ Դրա հետևանքով համաշխարհային կա-
պիտալիստական առևտրի մեջ կրճատվեց
թույլ զարգացած երկրների բաժինը։ Տասը
տարվա ընթացքում՝ 1950-ից մինչև 1960
թվականը, այն 31,7 տոկոսից իջավ 25,6 տո-

կոսի։ Դա ուժեղ չափով արգելակում է թույլ
զարգացած երկրների ինդուստրացմանը։
Իմպերիալիզմը պատրաստի արտադրանքի
մասնագիտացմանը մասնակցելու հնարավո-
րությունից զրկել է ո՛չ միայն նախկին գա-
ղութներին ու կիսագաղութներին։ Այսպես,
ժողովրդական դեմոկրատիայի արևելա-եվ-
րոպական երկրներն իր ժամանակին կապի-
տալիզմից «ժառանգություն» ստացան ար-
դյունաբերության՝ տնտեսապես չարդարաց-
ված ունիվերսալիզացիա, այսինքն՝ բազմա-
ճյուղ, բայց նվազ շահութաբեր տնտեսու-
թյուն։ Կախման մեջ գտնվելով արտասահ-
մանյան մոնոպոլիաներից, այդ երկրները
մինչև ազատագրվելը չկարողացան ստեղծել
խոշոր արդյունաբերություն և թողարկում էին
գլխավորապես բազմազան մանր սերիական
արտադրանք։ Միայն սոցիալիզմի պայման-
ներում է, որ ժողովրդա-դեմոկրատական պե-
տությունները անսահմանափակ ասպարեզ
ստացան իրենց էկոնոմիկան զարգացնելու
համար։ Այժմ նրանք հավասար պայմաններ-
րում մասնակցում են աշխատանքի բաժան-
մանը և մասնագիտացմանը։
Իսկ այն փոքրաթիվ պետություններում,
ուր պահպանվել է կապիտալիզմը, արդյու-
նաբերությունն այժմ էլ շարունակում է զար-



գանալ «ունիվերսալիզացման» գծով։ Այս-
տեղ համարյա չկա արտահանության համար
աշխատող խոշոր արտադրություն։ Դրա փո-
խարեն հսկայական մասշտաբներով թո-
ղարկվում է նվազ շահութաբեր արտադրանք։
Իսպանիայում, օրինակ, ազգային արտա-
դրանքի արժեքի ավելի քան մեկ երրորդը
բաժին է ընկնում արդյունաբերությանը։
Բայց միաժամանակ իսպանական բոլոր ձեռ-
նարկությունների 90 տոկոսը ըստ էության
կիսատնայնագործական արհեստանոցներ են։
Երկրի տրակտորային արդյունաբերությունը
բաղկացած է վեց գործարանից։ Դրանցից ա-
մեն մեկը օրեկան միջին հաշվով տալիս է
մեկ տրակտոր։ Ավտոմոբիլային արդյունա-
բերությունը, որն իր ծավալով տասն անգամ
փոքր է իտալականից, չորս անգամ ավելի
շատ ձեռնարկություններ ունի։ Մոտավորա-
պես նույն բանն է նկատվում Հունաստանում,
Թուրքիայում, Պորտուգալիայում։
Համակենտրոնացման ցածր մակարդակը
պայմաններում արտադրության «ունիվերսա-
լիզացիան» արգելակում է նաև այդ երկրնե-
րի մասնակցությունը միջազգային մասնա-
գիտացմանը։ Քսան տարվա ընթացքում,
1938-ից մինչև 1958 թվականը, դրանց ա-
ռանց այն էլ փոքր բաժինը, ապրանքների

համաշխարհային արտահանության մեջ 3,1 տոկոսից իջավ՝ կազմելով 2,2 տոկոս։ Այսպես, Հունաստանը այժմ համաշխարհային շուկաներն է արտահանում իր պատրաստի ապրանքների ընդամենը վեց տոկոսը, իսկ Թուրքիան՝ մեկ տոկոսը։

Այդպիսի դրությունը մեծ չափով բացատրվում է իմպերիալիստական խոշոր տերություններից, մասնավորապես ԱՄՆ-ից այդ երկրների ռազմա-քաղաքական կախվածությամբ։ Փոխանակ իրենց արդյունաբերական արտադրությունը զարգացնելու՝ Հունաստանը, Թուրքիան և ագրեսիվ բլոկներին մասնակից կապիտալիստական մյուս պետությունները հարկադրված են ազգային եկամտի մեծ մասը ծախսել Միացյալ Նահանգներից ստացած ռազմանյութերի ու հանդերձանքի արժեքը վճարելու նպատակին։

Այժմ Արևմուտքում շարունակվում է «Ընդհանուր շուկայի» շուրջը ռեկլամային աղմկարարությունը։ Այդ «Ընդհանուր շուկայի» մեջ մտնում են վեց երկրներ՝ Ֆրանսիան, ԳՖՌ-ն, Իտալիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը։ Եվրոպական տնտեսական համագործակցության ղեկավարներն ամեն կերպ գովաբանում են իրենց «զավակին»։ Նրանք փորձում են ապացուցել, թե իբր միայն



«Ընդհանուր շուկայի» շրջանակներում է, որ փոքր երկրները երաշխիք կստանան իրենց տրադիցիոն ապրանքները վաճառահանելու, մասնագիտացումն անսահմանափակ չափերով զարգացնելու համար։

Բայց «Ընդհանուր շուկայի» հնգամյա գոյությունը ուրիշ բան է ասում։ Տնտեսական տեսակետից ավելի ուժեղ երկրները նրա մեխանիզմն օգտագործում են կրտսեր պարտնյորներին տնտեսապես իրենց ենթարկելու համար։ Հոլանդիայի արտահանությունն ու ներմուծումը, օրինակ, այժմ 25 տոկոսով կախված է արևմտա-գերմանական շուկայից, այն ժամանակ, երբ հինգ տարի առաջ՝ 1957 թվականին, այն կազմում էր 18 տոկոս։ Հոլանդիայի և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի առևտրի կառուցվածքն այնպիսին է, որ շարունակ իր մեջ թաքցնում է հոլանդական էկոնոմիկային ուղղված վտանգ։ Այսպես, երբ 1961 թվականին վատացավ համաշխարհային կապիտալիստական շուկայի իրավիճակը, ԳՖՌ-ի կոնցեռնները խիստ կըրճատեցին Հոլանդիայի ձեռնարկություններին տրվող պատվերները։ Դա բացասաբար անդրադարձավ նրա էկոնոմիկայի վիճակի վրա։

«Ընդհանուր շուկան» հանգեցրեց իր մեջ մտնող երկրների մի շարք արդյունաբերա-

կան ձեռնարկությունների կծկման: Բանն այն է, որ այդ շուկայի ամբողջ քաղաքականությունն ուղղված է միայն խոշոր մասնագիտացված գործարանների ու ֆաբրիկաների զարգացման նպատակին, մի բան, որ կարող են ստեղծել հիմնականում ամենաուժեղ կոնցեռններն ու տրեստները: Ինչ վերաբերվում է նվազ շահութաբեր, մանր ու միջին ձեռնարկություններին, ապա, ինչպես խոստովանում է արևմտա-եվրոպական բուրժուական «Դի վելտ» թերթը, Եվրոպական տնտեսական համագործակցությունում տեղ չի մնում նրանց: Բելգիական հանքերը, օրինակ, չդիմանալով Ռուրի ավելի մեքենայացված հանքերի հետ մրցությանը, փակվում են որպես քիչ շահութաբեր: Իտալական նավաշինական ձեռնարկությունները չեն դիմանում ԳՖՌ-ի տեխնիկապես ավելի հագեցված նավաշինարանների մրցակցային պայքարին: Ֆրանսիայի և Իտալիայի խոշոր տեքստիլային և տրիկոտաժի արդյունաբերությունը, իր արտադրանքով հեղեղելով արևմտա-գերմանական շուկան, հարվածի տակ դրեց ԳՖՌ-ի միջին և մանր ձեռնարկությունները:

Այսպիսով, մի կապիտալիստական երկրի այս կամ այն ճյուղի արտադրության մասնագիտացումն ու խոշորացումը հանգեցնում



է մյուս երկրի ավելի նվազ շահութաբեր ձեռնարկությունների կծկման: Աշխատանքի նման բաժանումը օգտավետ է իմպերիալիստական խոշոր տերությունների մոնոպոլիստական միավորումներին:

Կապիտալիստական մասնագիտացումը հատկապես ծանր հետևանքներ է ունենում աշխատավորների համար: Նվազ շահութաբեր ձեռնարկությունների քայքայումը ուղեկցվում է բանվորների մասսայական վտարումով: «Եվրոպական ինտեգրացիայի» երկրներում գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու խոշորացումը, «Ընդհանուր շուկայի» հանձնաժողովի վիցե-պրեզիդենտ Մանսհոլտի տվյալներով, մոտ ժամանակներս կհանգեցնի ութ միլիոն գյուղացիական տնտեսությունների քայքայման:

Այն պայմաններում, երբ մասնագիտացման պտուղները յուրացնում են մոնոպոլիսները, կատարվում է սպառման առարկաների գների ո՛չ թե նվազում, այլ բարձրացում: Բավական է ասել, թե վերջին տասնամյակում կապիտալի երկրներում պատրաստի ապրանքների գները բարձրացել են 30 տոկոսով:

Միայն սոցիալիզմի օրոք, որը հիմնված է

արտադրամիջոցների հանրային սեփականության վրա, աշխատանքի բաժանումը և մասնագիտացումը ծառայում են որպես տնտեսական անհավասարության վերացման միջոց, տնտեսական չտեսնված առաջադիմության աղբյուր։ Այդ երևում է ժողովրդադեմոկրատական պետությունների օրինակով։ Օգտվելով ՍՍՌՄ օգնությունից, սերտորեն համագործակցելով սոցիալիստական սիստեմի շրջանակներում, նրանք ստեղծել են ծաղկող էկոնոմիկա, այդ թվում հզոր ինդուստրիա։ Դրա շնորհիվ հինգ տարվա ընթացքում, 1955-ից մինչև 1960 թվականը, Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների արտահանած մեքենաների ու սարքավորումների բաժինը, օրինակ, Բուլղարիայում աճել է վեց անգամ, Ռումինիայում՝ համարյա երեք անգամ, Լեհաստանում՝ ավելի քան երկու անգամ։

Ինչպես նշվեց ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում, սոցիալիստական սիստեմը արագորեն վեր է ածվում աշխարհի խոշոր ինդուստրիալ կենտրոնի։ Նրա բաժինը համաշխարհային արտադրության մեջ ներկայումս բարձրացել է համարյա 37 տոկոսով։ Այս է սոցիալիզմի երկրների հարաճուն համագործակցության, նրանց տնտե-



սական կապերի ամրապնդման արդյունքը։

«Սոցիալիստական համագործակցության պետությունների ժողովուրդները տարեցտարի ավելի ու ավելի են բազմապատկում իրենց հաջողությունները նոր կյանքի կառուցման գործում,— հայտարարեց Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գերագույն սովետի վեցերորդ գումարման երկրորդ սեսիայում։— Մեր ժողովուրդների խաղաղ աշխատանքը, գիտության և կուլտուրայի ասպարեզում նրանց ձեռք բերած հաղթանակները, նրանց եղբայրությունն ու փոխօգնությունը ոգեշունչ օրինակ են միլիոնավոր մարդկանց համար, որոնք թոթափել են գաղութային ճնշման շղթաները կամ դեռ մարտնչում են հանուն ազգային ազատագրության, կապիտալիստական երկրների աշխատավորների համար»:

Սոցիալիստական համագործակցության ամրապնդման գործում նոր էտապ հանդիսացավ կոմունիստական և բանվորական պարտիաների Կենտրոնական կոմիտեների առաջին քարտուղարների և Տնտեսական փոխօգնության խորհրդի մասնակից երկրների կառավարությունների ղեկավարների Մոսկվայի խորհրդակցությունը։ Խորհրդակցության որոշումներում սահմանված են աշ-

խատանքի միջազգային սոցիալիստական բաժանման և նրա բաղկացուցիչ մասը՝ արտադրության մասնագիտացումը կատարելագործելու ուղիները։

Այդպիսի կարևոր ուղիներից մեկն էլ կոլեկտիվ պլանավորման անցնելն է։ Զարգացնելով իր՝ «Համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման կենսական հարցերը» հոդվածի դրույթները, Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում առաջ քաշեց Տնտեսական փոխօգնության խորհրդի մասնակից բոլոր երկրների համար միասնական պլանային օրգանի ստեղծման գաղափարը։ Նրանց ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը կարևորագույն պայման է նյութական արտադրության բնագավառում՝ հասարակական կյանքի այդ վճռական ոլորտում կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի գերազանցության հասնելու համար։

Մ. ՄԱՔՍԻՄՈՎԱ

*Համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտի գիտական աշխատակից*



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Վ. Ի. Լենինի ծննդյան 93-ամյակը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վլադիմիր Իլյիչ Լենինի կենսագրությունը, *Հայպետհրատ, 1961։*

Ս. Մ. ԿԻՐՈՎ— Լենինը և բանվոր դասակարգը, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, Հայպետհրատ, 1958։*

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ—Լենինը և գյուղացիությունը, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, Հայպետհրատ, 1958։*

Ա. Ֆ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆ— Իմ հանդիպումները ընկեր Լենինի հետ, *Հայպետհրատ, 1958։*

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ— Հանուն Սովետական իշխանության, *Հայպետհրատ, 1960։*

Ա. ԲԵԶԻՄԵՆՍԿԻ— Լենինը կոմերիտմիության III համագումարում, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, Հայպետհրատ, 1958։*

Ն. Պ. ԳՈՐԲՈՒՆՈՎ— Ինչպես էր աշխատում Վլա-

գիմիր Իլյիչը, տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, Հայպետհրատ, 1958։

## 2. Լենինյան գաղափարների մեծ հաղթանակը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվությունը պարտիայի XXII համագումարին, Հայպետհրատ, 1961։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՄԿՊ Ծրագրի մասին, զեկուցում ՍՄԿՊ XXII համագումարում, Հայպետհրատ, 1961։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում 1963 թվականի փետրվարի 27-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 28-ի համարում։

Լենինյան ուղիով դեպի կոմունիզմի հաղթանակը, ընկեր Իլյիչովի զեկուցումը Վ. Ի. Լենինի ծննդյան 92-ամյակին նվիրված հանդիսավոր ժողովում 1962 թվականի ապրիլի 22-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի ապրիլի 24-ի համարում։

Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Վ. Ի. Լենինը և Անդրկովկասի ժողովուրդների ազատագրումը, Հայպետհրատ, 1960։

Վ. ՍՆԱՍՏԻՆ— Լենինի անմար գաղափարների հաղթանակը, հոդված, տպագրված «Հայաստանի գյու-



ղատնտեսություն» ամսագրի 1963 թվականի առաջին համարում։

Դեպի կոմունիզմ մեր երթն անհաղթահարելի է. «Պրավդա» թերթի 1963 թվականի մարտի 1-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 2-ի համարում։

## 3. Բոլոր ուժերն ի սպաս դնենք յոթնամյակի հինգերորդ տարվա պլանների կատարմանն ու գերակատարմանը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի տնտեսական հզորության բարձրացման համար մղվող պայքարը: Յոթնամյա պլանը կարևոր էտապ է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում, ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։

Յոթնամյակի հինգերորդ տարին, «Պրավդա» թերթի 1963 թվականի հունվարի 2-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ»-ի 1963 թվականի հունվարի 3-ի համարում։

Ժամկետից շուտ կատարել յոթնամյակի հինգերորդ տարվա առաջադրանքները, ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 20-ի համարում։

Ավելի բարձր տեմպ արդյունաբերության զարգացմանը, «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 22-ի առաջնորդող հոդվածը։

## 4. Գյուղատնտեսության առաջավորների փորձը արմատավորենք կոլտնտեսություններում և սովխոզներում

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել գյուղատնտեսության զարգացման հաջողությունները: Ավելի լրիվ բարելավել բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և գյուղատնտեսության մասնագետների նամակը երկրի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 31-ի համարում։*

Մարտունու կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության գյուղատնտեսության առաջավորների Դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 3-ի համարում։*

Համաժողովրդական մրցություն ծավալենք 1963 թվականին հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, *Նամակ տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 31-ի համարում։*

Գյուղատնտեսության առաջավորների ռեսպուբլիկա-



կան խորհրդակցության աշխատանքների վերաբերյալ ինֆորմացիոն նյութերը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 6-ի և 7-ի համարներում։*

## 5. Ուժեղ թափով ծավալել շինարարական աշխատանքները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական քաղաքականության ղեկավարման կենտրոնացումը և տնտեսական շինարարության կառավարման կատարելագործումը, *ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումին տված զեկուցումից, առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1963։*

Մեծ նվաճումներ և պայծառ հեռանկարներ, *Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի նախագահ Ա. Քոչինյանի զեկուցումը Երևանի ագիտատորների համաքաղաքային ժողովում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 21-ի համարում։*

Բոլոր ուժերը գործի դնել կապիտալ շինարարության պլանի հաջող կատարման համար, *ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 3-ի համարում։*

## 6. Աճում և ամրապնդվում է ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ազգերի մերձեցումը և ժողովուրդների բարեկամության ամրապնդումը, *ՍՄԿՊ Ծրագրի*

*մասին պարտիայի XXII համագումարում տված զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Պարտիայի խնդիրները ազգային հարաբերությունների բնագավառում, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը, Հայպետհրատ, 1961։*

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— Հավերժ, անխախտ բարեկամություն, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 3-ի համարում։*

## 7. ՍՍՌՄ-ը ակտիվորեն պայքարում է պետությունների զինաթափման ու խաղաղության համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Հասնել միջազգային պրոբլեմների խաղաղ լուծման, մերկացնել պատերազմի հրձիգների մեքենայությունները ու մանևրները։ Բարելավել պետությունների փոխհարաբերությունները, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Արդի միջազգային դրությունը և Սովետական Միության արտաքին քաղաքականությունը, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում 1962 թվականի դեկտեմբերի 12-ին, առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1963։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, 1963 թվականի փետրվարի 27-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 28-ի համարում։*

---



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ի. ՑՅՈՒՊԱ— Սովետական Ուկրաինա, Հայպետհրատ, 1963, գինը՝ 15 կոպ., 189 էջ։

*Այս գրքույկը հանրամատչելի ակնարկ է ծաղկող եղբայրական Ուկրաինայի, նրա փառավոր անցյալի, հերոսական առօրյայի և չքնաղ ապագայի մասին։ Գրքույկի հեղինակը հանգամանորեն պատմում է այն մեծ հաջողությունների մասին, որ ձեռք է բերել ուկրաինական ժողովուրդը սովետական իշխանության տարիներին։*

Ե. Լ. ՄԵԼԻՔՅԱՆ- Գյուղատնտեսական կենդանիների քիչ ուսումնասիրված վարակիչ հիվանդությունները, Հայպետհրատ, 1963, գինը՝ 14 կոպ., 158 էջ։

*Վերջին տարիներս մեծ ուշադրություն է դարձվում գյուղատնտեսական կենդանիների մի շարք քիչ ուսումնասիրված վարակիչ հիվանդությունների վրա, որոնք հակում ունեն լայն տարածվելու և զգալի վնաս են հասցնում ժողովրդական տնտեսությանը։ Վերը հիշված աշխատության մեջ պարզաբանվում են գյուղատնտեսական կենդանիների քիչ ուսումնասիրված վարակիչ հիվանդությունները, նրանց առաջացման պատճառները, ինչպես նաև այդ հիվանդությունների դեմ մղվող պայքարի միջոցները։*

Ա. Շ. ՄԱՐՋԱՆՅԱՆ— Հայաստանի մեքենաշինության ավտոմատացման հարցեր, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակչություն, 1963, գինը՝ 34 կ., 122 էջ:

Ինչպես հայտնի է ժամանակակից գիտության ու տեխնիկայի կարևոր պրոբլեմներից մեկը մեքենաշինության ավտոմատացման պրոբլեմն է: Ավտոմատացումը մարդուն ոչ միայն ազատում է աշխատանքի հոգնեցուցիչ ձևերից, այլև մեծ չափերով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը: Ներկա աշխատության մեջ հեղինակը մի շարք օրինակներով պարզաբանում է, թե ինչպես մեր ռեսպուբլիկայի մեքենաշինությունը հաջողությամբ ընթանում է ավտոմատացման ճանապարհով:

Վ. Գ. ՋՈՒԲԻՆԵԹՅԱՆ- Կապիտալ ներդրումների տընտեսական արդյունավետությունը հանրային անասնաբուծության մեջ, Հայպետհրատ, 1963, գինը 08 կոպեկ, 67 էջ:

Կապիտալ ներդրումների միջոցով մեր կոլտնտեսություններն ու սովխոզները անընդհատ ավելացնում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Այս գրքույկում հեղինակը պարզաբանում է այն հարցը, թե կապիտալ ներդրումները հանրային անասնաբուծության մեջ ինչպիսի տնտեսական արդյունք են տալիս: Հեղինակը կոնկրետ օրինակներով ցույց է տալիս կապիտալ ներդրումների ավելի արդյունավետ





օգտագործելու հնարավորությունները: Այդ կապակցությամբ նա պատմում է մեր ռեսպուբլիկայի այն կոլտնտեսությունների փորձի մասին, որոնք կապիտալ միջոցները ժամանակին և արդյունավետ օգտագործելու շնորհիվ հասել են տնտեսական բարձր ցուցանիշների:

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ- Հեղեղ, Հայպետհրատ, 1963, գինը՝ 10 կոպեկ, 110 էջ:

«Հեղեղ» խորագրով վիպակը նվիրված է կոլտնտեսային գյուղի կյանքին, կոլտնտեսականների հայրենանվեր աշխատանքներին, որոնք ջրանցք են կառուցում և այդ միջոցով ջրացնում խոպան հողերը: Վիպակում գեղարվեստորեն արտացոլված են նոր մարդկանց փոխհարաբերությունները, աշխատասիրությունը, նրանց սերը կյանքի և միմյանց նկատմամբ:

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству промышленностью и строительством

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству сельскохозяйственным производством

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 6

1963

*ՎՖ 07901    Պատվեր 243    Տիրաժ 8.426*

*Հանձնված է արտադրության 14/III 1963թ.*
*Ստորագրված է տպագրության 20/III 1963 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*